«ՑԱՌԱՁ»Ի ԹԵՐԹՕՆԸ (59)

# ՆԱԶԸՄ ՓԱՇԱՅԻ ՅՈՒՇԵՐԸ

## ՀԱՅՈՑ ԴԱՀԻՃԸ ԿԸ ՊԱՏՄԷ...

ԵՐԿՐՈՐԴ ՄԱՍ

### 9.— ԶԷՅԹՈՒՆԻ ԿՌԻՒՆԵՐԸ

Եւ ապստամբութեան վարիչները, որոնց բնաջնջումը երկու օրուան խնդիր էր, իրենց ձեռքերը փարտելով, ճեծարանօք եւ խաղաղութեամբ, մեկնեցան Եւրոպա:

1 մարտ 1896 թուակիր ծածկագիր հեռագիրով մը Ատանայի ոստիկանական տեսչութիւնը ինծի կը հաղորդէր թէ վերջ գտած է Կիլիկիոյ ապստամբութիւնը:

— «Հայ խռովարարներուն վարիչը, Աղասի եւ ընկերները, որոնք Զէյթուն մտած էին, այս հինգշաբթի Մերսինէն Մեսաժըրի ընկերութեան նանթ շոգենաւը նստան եւ մեկնեցան Մարսիլիա»:

Այո, վերջ գտաւ Կիլիկիոյ ապստամբութիւնը: Սակայն իրական վերջ մը չէր այդ: Յեղափոխութեան ուղեղն ու ձեռքերը, աւելի ազատ աշխատելու համար, մեծ պետութեանց պաշտպանութեան տակ, ցրուեցան օտար երկիրներու մէջ: Անշուշտ հանգիստ չպիտի նստէին անոնք: եթէ Կիլիկիոյ ապստամբութիւնը առժամապէս վերջ գտաւ, չէր նշանակեր թէ հայ յեղափոխական շարժումը բոլորովին կանգ առաւ: Երկրին միւս շրջանները իրենց խորէն կ'եռային ու կ'եփէին: Ինչպէս քիչ յետոյ պիտի կարդաք մանրամասնութիւնները, դէպքերը կանգ առած չէին երբեք:

Աղասի եւ իր վայրագ ընկերները սահմանէն դուրս հանուեցան: Սակայն երկրորդ եւ երրորդ դասակարգի կոմիտէճիները, որոնք երկրին մէջ կը մնային, կը շարունակէին յարձակում գործել Թուրք գիւղացիներուն վրայ, ու թէեւ առաջուան չափ չէին կրնար, բայց եւ այնպէս չէին դադրեր սպանութիւն գործելէ, կենդանիները գրաւելէ, աղբին անդին կրակ ձգելէ եւ տուները հրկիզելէ:

Յեղափոխական կոմիտէին այս մնացորդները ամէնէն աւելի կը գործէին դարձեալ Զոքմարզուանի, Տէօրթ-Եօլի կողմերը, ինչպէս նաեւ Մարաշի շրջակայքը եւ Այնթապի բոլորտիքը: Զկայ ուրիշ կուսակցութիւն մը որ Հնչակեաններու պէս, պարտուած ու կիսովին փճացած ըլլալով հանդերձ, տակաւին յամառէր խռովութիւն յարուցանելու Թուրք հայրենիքին մէջ:

Զէյթունի մէջ պաշարման ենթարկուելէ, պետերուն փախուստը տեսնելէ յետոյ, այս երկրորդական կոմիտէճիները նոյն յամառութեամբ յարձակեցան Մարաշի Փազարճըք գիւղին վրայ: Սպաննեցին քանի մը Թուրքեր, նահատակեցին մուէզզինը, որ մզկիթին աշտարակէն աղօթքի կը կանչէր հաւատացեալները: Այս դէպքը խուժները գայրոյթէ գայրոյթ գլորեց, «չիլէ»էն հանեց այլեւս: Բոլորն ալ փորձեցին յարձակիլ Հայոց տուներուն վրայ, սակայն կառավարութիւնը, ցաւալի դէպքերու առաջքն առնելու համար, արգելք հանդիսացաւ: Եւ այսպէս ոչ մէկ Հայու քիթ արիւնեցաւ:

Վերջապէս, երբ Կիլիկիոյ ապստամբութիւնը այս ձեւով զսպուած ու մարած էր, յանկարծ Անատոլուի զանազան կողմերէն յեղափոխութիւնը գլուխ ցցեց նորէն, լրջօրէն մտածելու մղելով եւ ծանր կացութեան մը մատնելով կառավարութիւնը: Անատոլուի հայ յեղափոխական դէպքերու պատմութեան մէջ կարեւոր տեղ մը կը գրաւեն Պիթլիսի խռովութիւնները:

### 10.— ՊԻԹԼԻՍ ԿԸ ՎԱՌԻ

13 հոկտեմբեր 1895ին, ուրբաթ օր, առաւօտուն, խուռն բազմութիւն մը լեցուցած էր Պիթլիսի Սուրբ Խորէն եկեղեցին: Այս հաւաքոյթը աննախընթաց եւ արտակարգ երեւոյթ մը ունէր: Ներկայ էին ոչ միայն Պիթլիսի հայ երեւելիները, այլ եւ բազմաթիւ Հայեր եկած էին շրջակայ քաղաքներէն ու գիւղերէն: Քիչ յետոյ ներս մտաւ սեւ մօրուքով, թուխ դէմքով մարդ մը: Բոլորն ալ յարգալից ձեւով ոտքի կանգնեցան: Եկողը բոլոր միսիոնարներէն՝ Ճօրճ կը կոչուէր:

Այս Ճօրճը Հնչակեան կուսակցութեան ոտքն ու ձեռքն էր, …խութեան վարիչը այդ շրջանին մէջ: Ճօրճ հպարտ նայուածք մը գնելով իր շուրջը, բարձրացաւ ամպիոնը, քանի մը անգամ հազալէ կարծես մագնիսացնել ուզեր՝ ամէնուն աչքին խորը պահ մը նայելէ սկսաւ խօսիլ.

— Գիտէ՞ք, այս օրերուս կը գրուի հայ ազգին պատմութիւնը… պատմութիւնը այսպէս կամ այնպէս գրելը, փառքով սկիզբը եւ… փակելը ձեր գործն է, հայ ազնիւ ցեղին ձեռքն է: Յեղափոխութիւնը… է Անատոլուի բոլոր շրջաններուն մէջ: Մայրաքաղաքի յեղափոխ… նորէն վերակենդանացաւ: Հայկական դրօշը կը ծածանի ամէն… Այդ դրօշին վրայ գրուած է «Ազատութիւն, Անկախութիւն եւ Անէ… բարոս Թուրքերուն»: Բոլոր մեծ պետութիւնները հայ ժողովուրդին… Անգլիա ձեզի ղրկած է արդիական զէնքեր: Գիտէք թէ ես այդ… բաշխեցի անոնց, որոնց անհրաժեշտ էր տալ: Անոնք որ զէնք… թող դիմեն ինծի, զէնք տամ: Մեր Հնչակեան կուսակցութիւնը… ձուց իր դիւցազնային ձայնը քաղաքակիրթ աշխարհին: Ձեզի հա… հովեց զէնք եւ դրամ: Այսօր բարբարոս խուժներուն աղօթքի օրն է… բարբարոսները, լեցուած են իրենց մզկիթներուն մէջ, ինչպէս կը… իրենց փտած ու գարշելի կրօնքը: Այսօր Հայաստանի բոլոր… վրայ յարձակում պիտի գործուի Հայոց կողմէ: Կոմիտէին ինծի… հրահանգովը, ես ալ ահա ձեզի կը հրամայեմ Աստուծոյ Տանը մէջ… տունծոյ եւ Յիսուսի Քրիստոսի առջեւ:

IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS

208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN
























«ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (65)

# ՆԱՋԸՄ ՓԱՇԱՅԻ ՅՈՒՇԵՐԸ

## ՀԱՅՈՑ ԴԱՀԻՃԸ ԿԸ ՊԱՏՄԷ...

ԵՐԿՐՈՐԴ ՄԱՍ

### 10.— ՊԻԹԼԻՍ ԿԸ ՎԱՌԻ

Սերոբէ, որ խոստովանեցաւ իր ոճիրը, հասկցուց թէ կոմիտէին մասին աւելի շատ տեղեկութիւններ կրնայ տալ կառավարութեան, եւ յայտնել խռովարարներու դաւադրութեան զանազան միջոցները։ Արդէն Գէորգ աղան, բժշկական խնամքի տակ, ապաքինած էր եւ դատախազութենէ հրաժարած. այնպէս որ Սերոբէ կ՚ազատէր դատական հետապնդումէ եւ բանտարկութենէ։ Ոստիկանապետը այս պարագան հաղորդեց Սերոբէի։

— Քեզ ազատ պիտի թողունք, այսուհետեւ չզբաղիս այսպիսի գործերով։

— Աճեմեւի՛ն, ոստիկանապետ հայրիկ, Աստուած պահէ պետութիւնն ալ, Սուլթանն ալ։ Ձեզմէ սա ալ կը խնդրեմ, որ Համազասպը եւս չհետապնդուի։ Անիկա մեղք չունի։ Ամբողջ մեղքը կը պատկանի անոր անիծեալ քեռայրին՝ Նազարին։ Ի՞նչ կ՚ուզէք ըրէք Նազարին։

— Մենք Համազասպը կը հետապնդէինք անոր համար, որ զարկաւ Գէորգ աղան։ Քանի որ հիմա Գէորգ աղան աղէկցաւ, այլեւս հետապնդելու պէտք չի մնար։

— Գիտէ՞ք, Համազասպն ալ ծառայէ Ճորճի մօտ։ Ուրիշ ծառայ մըն ալ ունի, Մահիր(?), որ 10 տարիէ ի վեր կ՚աշխատէր Ճորճի տանը մէջ։ Սակայն երբ մերժեց Ճորճի առաջարկը՝ չդաւաճանելու համար իր պետութեան, Ճորճ վռնտեց զայն։ Հիմա մենք կ՚ուզենք կուսակալ փաշային խնդրագիր մը տալ, պիտի մատնենք Ճորճը եւ պիտի ըսենք ճշմարտութիւնը։

— Շատ աղէ՛կ, գացէք ըրէք։

Կոմիտէին վարիչները ձերբակալուած էին արդէն։ Այդ առենները Անատոլուի քննիչը, Շաքիր փաշա, որ կը զբաղէր Անատոլուի բարենորոգումներու հարցով, Էրզրումէն Պիթլիս վինուորական ուժ ղրկեց, այսպէս վիժեցնելով ծրագրուած այն երկրորդ յեղափոխութիւնը որ տեղի պիտի ունենար Պիթլիս քաղաքին մէջ։ Եւ սակայն շրջակայից մէջ պակաս չեղան շարք մը դէպքեր։

### 11.— ԿՌԻՒՆԵՐԸ ՊԻԹԼԻՍԻ ՇՐՋԱՆԻՆ ՄԷՋ

Մուշ այն շրջաններէն է, ուր Հայերը համեմատաբար աւելի հոծ բնակչութիւն մը կը ներկայացնեն։ Գիւղերուն մեծ մասը ամբողջովին հայաբնակ է։ Ինչպէս Տիարպէքիրը, Էրզրումը եւ Հաճընը, Մուշ եւս ոտքով գլխով «չիլէ»էն եղաւ՝ շնորհիւ այն խռովարարներուն որոնք ղրկուած էին կոմիտէին քարոզչական վարչութեան կողմէ։ Մուշի մէջ կ՚ապրէր Տէր Բարսեղ քահանան։ Այս մարդը արժանաւոր հոգեւոր հովիւ մըն էր։ Արգելք կ՚ըլլար կոմիտէին բոլոր քարոզութիւններուն, առանց ականջ դնելու անոնց սպառնալիքին։ Կառավարութեան կը դիմէր, յայտարարելով որ վարանոցներու այս ջոկերը խռովութիւն պիտի յարուցանէ՝ եթէ լուրջ միջոցներ ձեռք չառնուին։ Միեւնոյն ատեն եկեղեցիին մէջ քարոզ տալով՝ կը յորդորէր հայ ժողովուրդը, որպէսզի հանգիստ նստի եւ պետութեան հաւատարիմ մնայ։ Կոմիտէին կողմէ մէկ-երկու սպառնագիր ստացաւ թէպէտխապանուի իբրեւ դաւաճան։ Այդ նամակները ներկայացուց տեղական կառավարութեան։ Վերջապէս օր մըն ալ լսեցինք որ սպաննուեր է Տէր Բարսեղ քահանան։ Խեղճ մարդը զոհ գնաց իր պարտականութեան եւ կառավարութեան հանդէպ իր ցոյց տուած հաւատարմութեան համար։ Ոստիկանութիւնը փնտռեց քրքրեց, չկրցաւ սակայն գտնել մարդասպանը։

Գիւղերուն մէջ եւս անհատներու այսպիսի սպանութիւններ պակաս չէին։ Այլեւս Մուշը հին Մուշը չէր։ Ապստամբութեան եւ յեղափոխութեան իբրեւ առաջին նշան, Մշեցիները յանկարծ յայտարարեցին թէ տուրք չպիտի վճարեն կառավարութեան։ Պետական տուրքերու հաւաքիչներն ու քաղաքային զինուորները կը վռնտէին իրենց դռնէն, յայտարարելով որ «հինգ փարա չենք տար կառավարութեան»։ Եւ ապարէզ կը կարդային։

Փոխեցին իրենց վերաբերումը հանդէպ Թուրքերուն, որոնց հետ եղբօրպէս կ՚ապրէին առաջ։ Կը հայհոյէին, խօսք կը նետէին ու կռիւ կը փնտռէին։ Նոյնիսկ ոմանք առանց ծածկելու կ՚ըսէին Թուրքերուն.

— Աղբար, ձեր տեղը առաջ ալ Պաղտատ էր, վերջն ալ նորէն Պաղտատ է, ժողվեցէք կապեցէք ձեր ունեցան—չունեցածը եւ կորսուեցէք այս տեղերէն։

Եւ այսպիսի ծանր անարգանքներ կը գլորէին Թուրքերուն երեսին։

Աչա այս միջոցին էր, որ լուր առնուեցաւ թէ գիւղերուն մէջ սպաննուած են քանի մը Թուրքեր։ Մուշի Թուրքերը յուզումի մատնուեցան։ Կը հասկցուէր որ խռովութիւն մը պիտի ծագի, զոր անկարելի պիտի ըլլայ արգիլել։ Կը կարծուէր, որ թրքական եւ հայկական թաղերուն մէջ Հայերն ու Թուրքերը գաղտնի, գողունի կռուի միջոցներ ձեռք կ՚առնէին։ Երկու հակառակորդ թաղերուն մէջ շարունակ 5—10 հոգի տուները հաւաքուելով գաղտնի խորհրդակցութիւններ կը կատարէին, յուզումով ու տագնապով իրարու բաներ մը կը հասկցնէին։

(Շար.)

IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS

208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN




















«ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (70)

# ՆԱԶԸՄ ՓԱՇԱՅԻ ՅՈՒՇԵՐԸ

## ՀԱՅՈՑ ԴԱՀԻՃԸ ԿԸ ՊԱՏՄԷ...

### ԵՐԿՐՈՐԴ ՄԱՍ

### 12.— ՎԱՆԻ ԿՌԻՒՆԵՐԸ

Սաքօ թէեւ շատ պնդեց, որ խումբին հետ երթամ, բայց չգացի: Այս նամակը գրելէս յետոյ թերեւս Պաքօ երթամ: Կը խնդրեմ որ Վահանը չբաժնէք խումբէն: Նոր զէնքերուն վրայ երեք տառով նշան մը փորագրել տուած եմ: Կը յուսամ որ կը հաւնիք: Ռուսական թերթերէն իմացանք որ սպաննուած է Քէշիշեան Յովհաննէսը: Շատ ուրախ եղանք: Ընկերութեան միտքը բոլորովին զբաղած է Վանի գործերով. անհրաժեշտ է անպայման կարեւոր յեղափոխութիւն մը կատարել Վանի մէջ: Այդ նպատակով գարնան մեծ խումբ մը պիտի ղրկուի: Զէնքերը կը շինուին: Յետոյ նորէն կը գրեմ: Ես ալ կը գրուիմ «Գոլոշեան» ընկերութեան մէջ: Այս շաբաթ ուրիշ տուն մը պիտի փոխադրուիմ: Սիլոս հասած է խումբ մը, որո՞նք են, չեմ գիտեր: Սաքօ հիւանդ ըլլալով Սիլոս պիտի երթայ: Զէնքերը Արթաքին բերաւ: Այստեղ այլեւս ռուսական «սիւրծելի» զէնք չկայ: Այս աշխատողները միսիոնարներ եւ Ռուսիացի են: Թաւրիզի ամբողջ բնակչութիւնը բնաջինջ եղաւ: Արշակ, ինչ որ կ'ուզէք, գրեցէք ինծի: Խումբին հետ այս գարնան Վան պիտի գամ: Հոգս չէ թէ մեռեր եմ կամ ողջ եմ մնացեր: Մի մոռնաք ըլլս եւ նամակ գրեցէք: Մեր Գալուստը Պարսկաստան պիտի գայ: Սակայն չեմ գիտեր թէ ե՛րբ պիտի գայ: Նամակդ Արիստակէսին միջոցաւ ղրկէ»: Թաւրիզ Յակոբ Մ. Պ.:

Ուրիշ նամակ մը, հետեւեալ յատկանշական խօսքով. — «Պիտի տեսնէք, ինչե՛ր պիտի պատահին»:

Վահանի ձեռամբ Քարտաշեան Տիգրանի, Վան,

«Սիրելի ընկերներս Տիգրան եւ Սարգիս,

«Ի՞նչպէս էք: Կը շարունակէ՞ք ձեր գործը: Թէեւ անակնկալ կերպով բաժնուեցայ ձեզմէ, բայց հոգ չէ: Ծանօթ առած մը կ'ըսէ.—Հեռանաս կը սիրեն քեզ, մօտենաս՝ կը պաղին քեզմէ: Հիմա Թաւրիզ կը գտնուիմ: Սակայն մտադիր եմ Պաքուերթալ եւ մինչեւ գարուն մնալ այնտեղ: Այս օրերուս բազմաթիւ մարդասիրական (մարթին) բերին: Վանի համար մեծ պատրաստութիւն կը տեսնուի: Վահանի հետ լաւ վարուեցէք: Անցեալը մոռցէք, ապագային նայեցէք: Ժողովները գաղտնի պահեցէք եւ կանոնաւորապէս շարունակեցէք: Մեր յոյսը ձեր վրայ է: Դաշոյին ու Պետոյին զբաղումները շատ են: Ամէն բան անոնց հարցուցէք, եւ անոնց կարծիքին համաձայն շարժեցէք: Պետօն այսքան տարիէ ի վեր պահուըտած էր Վանի մէջ: Երբեք դուրս մի ելլէք Պետոյի եւ Դաշոյի հրամաններէն եւ ուժ տուէք գործին: Մեր գործերը փէտայիի գործեր են: Նաւահանգիստի ընկերութեան հետ լաւ խօսեցէք: Իրենց ղրացի Գոլոշեան ընկերութիւնը մօտ օրէն Վանի վրայ պիտի թափէ աճազին ուժ: Տեսնուեցէք Տիգրանի, Սաքոյի, Պետրոսի, Յարութիւնի ու Դաշոյի հետ: Անոնցմէ կը հասկնաք թէ ինչե՛ր պիտի պատահին այս գարնան: Երբ նամակիս պատասխանը առնեմ, երկրորդ նամակս կը ղրկեմ Պաքուէն: Հաճոյին, Մանոյին, Գիրգորին եւ բոլորին մասնաւոր յարգանքներս: Քաջ եղէք եւ Գոլոշեան (*) ընկերութեան մէջ մտէք, ուրիշ կողմի մարդոց մի նայիք»:

Թաւրիզ՝ ՅԱԿՈԲ Մ. Պ.

Բոլոր այս նամակներէն եւ կառավարութեան կատարած գաղտնի քննութիւններէն կը հասկցուէր, որ կոմիտէճիները կարեւոր ու մեծ յեղափոխութիւն մը պիտի յարուցանէին Վանի մէջ, եւ այդ նպատակով մեծ պատրաստութիւններ կը տեսնէին: Նոյնիսկ պուլկար եւ ռուս սպաներ կոմիտէի զինուորներուն կը սորվեցնէին յարձակման, նահանջի ռազմական

(*) ԽՄԲ.— Բնագրին մէջ գրուած է Քօլի Շարք: Արդեօ՞ք «Դրօշակեան» ըսել կ'ուզէ:

մարզանքները: Միւս կողմէ, կոմիտէն կը շարունակէր սպաննել, [illegible] գաւաճան, բոլոր այն Հայերը, որոնք չէին միանար իրենց, կամ հաւատարիմ կը մնային կառավարութեան, կամ պաշտօն կը խնդրէին կառավարութենէն: Այս սպանութիւնները գործելէ յետոյ, ամէն կողմ լուր կը [illegible] մեր ու կը սպառնար թէ այսպէս պիտի սպաննէր բոլոր դաւաճանները.

Նոյն ատեն շատցած էին յեղափոխական կոմիտէները: Նախապէս գործէին միայն Հնչակեանները, եւ ահա մէջտեղ ելաւ նոր կոմիտէ մը կոմիտէն, որ կը կոչուէր «Դրօշակեան», չափազանց եռանդ ցոյց կու[տար] եւ վերջին ժամանակներու բոլոր ոճիրները եւ յեղափոխութիւնները կոմիտէն է որ կը կատարէր:

Այսպէս այս նոր կոմիտէին մէկ սպառնագիրը գտնուեցաւ Երզրումի Հայու մը տունէն: Այս Հայը պաշտօն մը ստացած էր կառավարութենէն: Ահա այդ սպառնագիրը.—

2 Դեկտ. 1895 Երզրում

Ազդարարութիւն

Պաշտօն ստանալու համար, դիմեր ես Շաքիրին (*): Դաւաճանի [illegible] կը համարենք դիմումը զոր կատարեր ես մեր հայրենիքի ներկայ [illegible] թեան մէջ: Մտածէ՛ այն վճիռներուն մասին, որոնք տրուեցան ու [illegible] ծադրուեցան քու նախորդներուդ մասին: Մտածէ՛ եւ պաշտպանէ ինքզ[քեզ]: Հայ յեղափոխական կոմիտէն քունի մէջ չէ: Ամէն բան գիտէ, եւ լուծելու կարող է: Մեղք է երիտասարդութեանդ: Անմիջապէս գրէ [illegible] ժարականդ եւ, առաջին անգամ ըլլալով, ուրիշներուն դէշ օրինակ [illegible] զգուշացիր: Ասիկա կը պահանջենք քեզմէ: Եթէ չհրաժարիս, կամ այս [illegible] բարութիւնը կառավարութեան հաղորդես, օղը կը հանենք առնդ-տեղդ տանիքովդ միասին: Լաւ մտածէ:

Հայ Յեղափոխական Դաշնակցութեան

Երզրումի կեդր. Կոմիտէ

(*) ԽՄԲ.— Անատոլուի քննիչ Շաքիր փաշա:

(Շար.)

## Իսլամ համագումարը եւ նոր խալիֆան

Գահիրէի «Էլ Մուգաթթամ» թերթը կը գրէ թէ Շէվքէթ Ալին է որ ներշնչած է Երուսաղէմի միւֆթիին՝ իսլամական համագումար մը հրաւիրել դնկտ. 7ին: Եգիպտական թերթը կ'աւելցնէ թէ Հնդկաստանի խալիֆայականները պատրաստ են վճարելու բոլոր ծախքերը, որովհետեւ կը յուսան համոզել համագումարը որ վերահաստատէ նախորդ խալիֆա Ապտիւլ Մեճիտը: Ինչպէս կը յիշուի, այս վերջինը գահընկէց եղաւ Թուրքիոյ Ազգային Մեծ Ժողովին կողմէ, 1924 մարտ 3ին եւ այժմ Նիս հաստատուած է:





### Հ. Յ. Դ.

ԳԱԻԱՌ

Լիոնի Մարզպետ խումբի ժողովը այս Հինգշաբթի իրիկուն ժամը 8.30ին Գրադարանի սրահը: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

ԼԻՈՆԻ Պատ. Միութեան ընդհ. ժողովը վաղը Հինգշաբթի իրիկուն, ժամը 8.30ին Ակումբ. Ընթերցասրահին մէջ:

### ԿԸ ՓՆՏՐՈՒԻ

— Լեւոն Մուրատեան կը փնտռէ Յակոբ Քէսմէնեան, կը կարծուի թէ ասկէ առաջ Փօրտօ գտնուած է: Իմացնել Léon Mouradianի, 125 Cité Verminck, Croix-Sainte, (B. du Rhône).

— Կը փնտռուի Արթին Ալթունճեան կամ Սարաֆեան 25 տարեկան իր եղբօր Կարապետի կողմէ: Վերջին անգամ տեսնուած է Մակեդոնիոյ մէջ: Լուր ունեցողներէն կը խնդրուի տեղեկացնել հետեւեալ հասցէին. Mr G. Altouvadjian, H.K. Home La Gaudinière, La ville-aux-Clercs, Loir-e Cher.

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՏԱՐՕՆ Տուրուբերանի Հայր. Միութեան պատգամաւորական ժողովը տեղի կ'ունենայ Նոյեմբեր 8, Կիրակի օրը Տէսինի մէջ: Կը խնդրուի մասնաճիւղերու պատգամաւորներէն ճշդապահ ըլլալ:

«ԱՌՈՂՋ ԿԵԱՆՔ»ի խմբագրին պատահած մէկ արկածին հետեւանքով, ամսագրին, Հոկտ. եւ Նոյեմբ. թիւերը միացեալ պիտի հրատարակուին:

### ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆԱՑ ԴԻՒՐՈՒԹԻՒՆ

Պաշտօնական մարմիններու ուղղուած ամէն տեսակ աղերսագրերու խմբագրութիւն, հարկային, ապահովագրական, Ֆրանսա մուտքի արտօնութեան, ինքնութեան թուղթերու կանոնաւորման եւ նաթիւրալիզասիոնի օրէնքներու վերաբերեալ խորհուրդներ: Ամուսնական ձեւակերպութեանց արագ հետապնդում 15 օրուան մէջ:

Դիմել՝ Խ. ՔԷՊԱՊՃԵԱՆի, ամէն օր ժամը 10—12, 20 rue de Bézons à Courbevoie (Seine), Tél. Defénse 0—39:



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS

208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN



«ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (76)

# ՆԱԶԸՄ ՓԱՇԱՅԻ ՅՈՒՇԵՐԸ

## ՀԱՅՈՑ ԴԱՀԻՃԸ ԿԸ ՊԱՏՄԷ...

ԵՐԿՐՈՐԴ ՄԱՍ

### 15.— ԷՐԶՐՈՒՄԻ ԿՌԻՒՆԵՐԸ

— Արթի՛ն, կոմիտէին նամակը ցոյց տուիր բարբարոսներու կուսակալին, ի՞նչ օգուտ կը սպասես ատկէ:

— Օձիքս ձգեցէք: Ես պարզ փաստաբան մըն եմ, ես ոչ մարդ կրնամ սպաննել, ոչ ալ ապստամբութիւն վարել, ի՞նչ կ'ուզէք ինձմէ: Ձե՞ք վախնար կառավարութենէն: Վստահ եղէք, որ պատիժը կը կրէք:

— Դուն հիմա հետս եկուր, երթանք կոմիտէին մօտ: Այսպիսի բաներէ այլեւս հրաժարէ վերջնապէս եւ հաւատարիմ եղիր քու ազգիդ:

— Նախ դուք հաւատարիմ եղէք ազգին: Ազգը պիտի կործանէք այս ճամբով: Այս ճամբան, զոր բռնած էք, լաւ ճամբայ չէ: Ինչպէս կրնաք գլուխ ելլել քառ-քոծ՛ամբան կառավարութեան հետ: Ետքոյ, ի՞նչ գէշութիւն տեսաք Թուրքիայէն ու Թուրքերէն:

— Վերջին խօսքդ ա՞յս է, Արթի՛ն:

— Այո՛, առաջին խօսքս վերջին խօսքս է:

— Ուրեմն, գրէ՛ կտակդ:

Այս խօսակցութիւնը տեղի կ'ունենար 1895 յուլիսի 23ին, կէսօրին: Այդ օրը, իրիկուան դէմ, Էրզրումի ամէնէն բանուկ եւ ամէնէն բազմամբոխ ճամբուն վրայ, յունական եկեղեցւոյն փողոցին մէջ, երբ Տէր Սարգիսեան Արթին եւ առեւտրական սենեակին անդամներէն Պօղոյեան Սիմոն միասին կ'անցնէին, յանկարծ զէնքի ձայն մը լսուեցաւ: Արթին էֆէնտի անկենդան գետին փռուեցաւ: Երբ Պօղոյեան Սիմոն, ծռելով իր ընկերոջ վրայ կ'ուզէր հասկնալ թէ ո՞ւր է տակաւին, որպէսզի բժիշկ մը կանչէր եւ ազատէր զայն, յանկարծ ձայն մը լսեց ղիմացէն.

— Դուն ալ այդ դաւաճանին հետ ընկեր ես, առ ուրեմն հատ մըն ալ քեզի...

Լսուեցաւ զէնքի երկրորդ ձայն մըն ալ, եւ Սիմոն եւս անկենդան գետին փռուեցաւ:

Այս կէս վայրկեանի ընթացքին կատարուած երկու սպանութիւնը տեղի կ'ունենար ամէնուն աչքին առջեւ: Եւ սակայն, հակառակ ոստիկաններուն բոլոր ջանքերուն ու փնտռտուքներուն, կարելի չեղաւ գտնել սպանիչները: Զարմանալին այն է որ սպանեալներուն ընտանիքները կառավարութեան դիմելով պաշտօնապէս կը յայտարարէին թէ դատ չունին որեւէ մէկուն դէմ:

Բոլոր այս ոճիրներուն հեղինակը այլեւս Հնչակեան կուսակցութիւնը չէր, այլ նոր կուսակցութիւն մը, Դրօշակեանները, որոնք նոր կը սկսէին գործի:

1895 Հոկտ. 18ին, շուկային մէջ, լպոււ (հալլած) Մանուկ մէկիկ մէկիկ այցելեց Հայոց խանութները, ըսելու համար.

— Օ՛ն, շուտ փակեցէք խանութները:

Այս բանը ուշադրութիւնը գրաւեց Թուրք ոստիկանի մը, որ այդ կողմերէն կ'անցնէր այդ պահուն: Մօտենալով Մանուկին, հարցուց.

— Բարեկա՛մ, ո՞վ ես դուն, ի՞նչ կ'ուզես այս մարդոցմէ: Ինչո՞ւ պէտք է փակեն խանութները:

— Ես Հայ եմ, իսկ դուն ո՞վ ես: Այս խանութներուն տէրերն ալ Հայ են, մեր ներքին գործերուն մարդ չի կրնար խառնուիլ:

— Ես մէկն ալ չեմ, ես ոստիկան մըն եմ, որ պաշտօն ունիմ պաշտպանել հասարակաց իրաւունքները:

— Կ'ուզես ոստիկան եղիր, կ'ուզես սպայ: Այստեղ ի՞նչ կայ իբրեւ հասարակաց իրաւունք: Ոճի՞ր գործուեցաւ: Ժողով ունինք, ամէնուն ալ լուր կուտամ, որ հաւաքուին:

— Ժողովները արգիլուած են օրէնքով: Ես կ'արգիլեմ ձեզի ժողով գումարել:

— Իսկ ես կոմիտէին մարդոցմէ եմ, աչքդ բա՛ց, փոխս էֆէնտի:

— Ես կոմիտէ մոմիտէ չեմ ճանչնար: Հիմա միասին պահականոց եկուր, տեսնեմ:

Կոմիտէճին ոստիկանին աչքերուն մէջ կարդաց,—ուզէ չուզէ բռնութեամբ պահականոց պիտի տարուի, բայց եւ այնպէս քիչ մըն ալ հերոսութիւն ծախել ուզելով, ըսաւ.

— Հապա՞ եթէ չուզեմ գալ...

Ոստիկանը չպատասխանեց, ուժեղ, քաջ եւ յաղթանդամ մէկն էր: Մանուկին օձիքէն բռնելով, առաջ քշեց:

— Եթէ չուզես գալ, ես գիտեմ թէ մարդը ի՞նչպէս կը տանին քաշկռտելով:

Հազիւ թէ նոքա մտեր էին ոստիկանական տեսուչին գրասենեակէն, երբ դուրսը հրացանի ձայն մը լսուեցաւ: Պահակազօրքի պարենաւորման պաշտօնեաներէն Մէհմէտ էֆէնտի, կառավարչութեան շէնքին առջեւ գետին տապալեցաւ յորդահոս արեան մէջ եւ մեռաւ: Ոճրագործ Հայը զարնելէ յետոյ խոյս տուաւ: Թուրքերը, որ յուզման մատնուած էին, սկսան հետապնդել ոճրագործը, որ կը փախչէր դէպի հայկական թաղերը, ընդ մերթ ետ դառնալով եւ զէնք արձակելով հետապնդողներուն վրայ: Այդ դնդակներէն վիրաւորուեցան երկու Թուրքեր եւս: Հետապնդող Թուրքերուն եւ փախչող Հայուն միջեւ հազիւ 5-10 մեթր տարածութիւն մը կար: Երբ հետապնդողները պիտի բռնէին ոճրագործին օձիքէն, գիւղ նոր կոմիտէներու 100 հոգինոց խումբ մը զինացն ելաւ Թուրքերուն:

(Շար.)

## Հ.Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ ԿԸ ՏՕՆՈՒԻ

ՓՈՆ ՏԸ ՇԷՐԻԻԻ ՄԷՋ, ԿԻՐԱԿԻ 1 ՆՈՅԵՄԲԵՐ

*Ժամը 2ին Օթէլ տը Ֆրանսի սրահին մէջ*

*կը բանախօսէ Ընկ. Բ. ԱՂԱԲԷԿԵԱՆ*

ԼԻՈՆ, ՆՈՅԵՄԲԵՐ 7ԻՆ

ԵՐԵԿՈՅԹ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ԽԱՅ ԼԷ ՄՈՒԼԻՆՈՅԻ ՄԷՋ

*Հ. Յ. Դ. ՋԱՒԱՐԵԱՆ ԿՈՄԻՏԷԻՆ ԿՈՂՄԷ*

*Այս Շաբաթ իրիկուն, մինչեւ լոյս*

*Մուլինոյի Թաղապետութեան սրահին մէջ*

*կը նախագահէ Ընկ. ՎԱՀԱՆ ՀԱՄԲԱՐՁՈՒՄԵԱՆ*

*Գեղարուեստական բաժնին կը մասնակցին Տիկ. ՍՈՒՐԱԲԵԱՆ եւ Պ. Ա. ՇԱՀԽԱԹՈՒՆԻ:*

*կը նուագէ ԵՓՐԱՏ նուագախումբը*

*կէս գիշերէն վերջ պար, ճագպանտ, ճոխ պիւֆէ:*

*Տոմսերու գինը 5 ֆրանք*

փորթ վէրսայլէն 23 եւ 32 թիւ հանրակառքերը

Ա. Ե. Հ. Կ. ԽԱՉԻ ՓԱՐԻԶԻ

«ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՊԱՇՏՊԱՆՈՒԹԻՒՆ» ՄԱՍՆԱՃԻՒՂԻ

ՊԱՐԱՀԱՆԴԷՍ — ԵՐԵԿՈՅԹԸ

1932 Յունուար 23ին: կը խնդրուի նկատի ունենալ այդ թուականը

## Հ. Յ. Դ.

*Գ Ա Ւ Ա Ռ*

*ՄԱՐՍԷՅԼԻ Ռոստոմ ենթակոմիտէի ընդհ. ժողովը վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին. խիստ կարեւոր օրակարգ, պարտաւորիչ ներկայութիւն: Ներկայանալ անդամատոմսով:*

*ՍԷՆ Թ'ԷԹԻԷՆԻ ընկերական ժողովը վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին Փլաս տը Փէքի թիւ 3ի վերնայարկը: Կարեւոր օրակարգ: Պարտաւորիչ ներկայութիւն: Բացակաները նկատի պիտի առնուին,*

*ՓԱՐԻԶԻ Տարօնի Հայր. միութեան ընդհ. ժողովը այս կիրակի ժամը 3ին,* 241 Rue J. J. Rousseau: *Տեղի պիտի ունենայ պատգամաւորական ներկայացուցիչի ընտրութիւն: Բոլոր հայրենակիցներէ կը խնդրուի ներկայ գտնուիլ:*



Le Gérant H STEPHAN



«ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (77)

# ՆԱԶԸՄ ՓԱՇԱՅԻ ՅՈՒՇԵՐԸ

## ՀԱՅՈՑ ԴԱՀԻՃԸ ԿԸ ՊԱՏՄԷ...

ԵՐԿՐՈՐԴ ՄԱՍ

### 15.— ԷՐԶՐՈՒՄԻ ԿՌԻՒՆԵՐԸ

Երբ Թուրքերը տեսան որ հայկական ստուար զանգուած մը կը հասնի, դիրք գրաւեցին պատերուն անկիւնը եւ փոխադարձեցին կոմիտէճիներուն կրակին:

Պահակազօրքը, երբ լսեց զէնքի ձայները, հասաւ ժամանակին: Եւ կռիւը կատարածը ընդհատել: Հայերը ձգած էին 57 մեռեալ, իսկ Թուրք զինուորները եւ ժողովուրդը՝ 15 հոգի:

Այս դէպքէն յետոյ ձերբակալուեցան կոմիտէին ղեկավարները եւ կասկածելի անձերը: Եւ քաղաքին մէջ այսպէս կարելի եղաւ հաստատել խաղաղութիւնը: Եւ սակայն նահանգին զանազան շրջաններուն մէջ կը շարունակուէին ոճիրները, թալանն ու կոտորածը անընդհատ:

### 16.— ՏՐԱՊԻԶՈՆԻ ԿՌԻՒՆԵՐԸ

Այդ օրերուն Վանի նախորդ կուսակալը, Պահրի փաշա, կը գտնուէր Տրապիզոնի մէջ: Քանի մը օր Տրապիզոն մնալէ յետոյ, պիտի մեկնէր դէպի Պոլիս:

1895 Սեպտեմբեր 21ին, Տրապիզոնի վերաքննիչ ատեանին նախագահը, Էսատ պէյ իր տունը ճաշի հրաւիրած էր Պահրի փաշան: Իրիկուան դէմ մեր զինուորական հրամանատարներէն Համտի փաշա այցելութեան կ'երթայ Պահրի փաշային:

— Փաշա՛, ժամանակը եկաւ, հրամեցէք երթանք, ես ալ հրաւիրուած եմ Էսատ պէյի տունը:

— Իրա՞ւ, ի՞նչ լաւ եղաւ որ այսպէս յարմարեցաւ: Երթանք:

Եւ երկու փաշաները խօսելով խօսակցելով յառաջացան դէպի Էսատ պէյի տունը: Տրապիզոնի շրջանակին զինուորական հրամանատարը, Համտի փաշա, այսպէս կը բացատրէր օրուան կացութիւնը.

— Ի՞նչ է ձեր կարծիքը Պոլսոյ դէպքերուն մասին: Բարեբախտաբար կը թուի թէ շուտով կրցան առաջքն առնել: Այսօր ոստիկանական նախարարէն ծածկագիր հեռագիր մը ստացայ: Կը տեղեկացնէ թէ ձեռք անցուցած է կարգ մը վաւերաթուղթեր, որոնք կը հաստատեն թէ Անատոլուի հայաբնակ շրջաններուն մէջ եւս ապստամբութիւններ ու խռովութիւններ տեղի պիտի ունենան մօտ ժամանակի մը ընթացքին: Արդարեւ այստեղ ալ քանի մը օրէ ի վեր կը նշմարուի շարժում մը: Պիթլիսի մէջ անցեալ ուրբաթ, երբ ժողովուրդը կէսօրուան աղօթքը կը կատարէր, յարձակում կը գործեն Հայերը: Բաւական աւրիւն կը թափեն: Կը տեսնե՞ս, մեր բարեկամները մեզմէ առաջ կ'իմանան լուրերը: Անատոլուի այս ու այն կողմը տեղի կ'ունենան նման դէպքեր: Ես այս տեղ կարգ մը միջոցներ ձեռք առի, տեսնենք հայելին ի՞նչ ցոյց կուտայ:

— Երբ դեռ ես Վան կը գտնուէի, լուր առած էի այդ մասին: Ռուսահայերը, առանց անցագրի, մեկով երկուքով կ'անցնին սահմանը, եւ Թուրքիա կը մտնեն: Թուրքիոյ մէջ հետզհետէ կը զօրանան կոմիտէճիները: Արդիական զէնքերով կը զինուին: Իսկ ի՞նչ է կարծիքդ Պարսկաստանի աշիրէթներուն մասին: Անոնք ալ միացեր են Հայերուն: Պատրաստ եւ զգոյշ պէտք է գտնուիլ, փաշա՛:

Հեռուէն երկու սուարներ երեւեցան: Մօտեցան: Մէկը Պարսկաստանի հիւպատոսն էր, Միրզա Րազի Խանը, միւսը՝ Տրապիզոնի թղթատարական ու հեռագրական տեսուչը, Իզզէթ պէյ:

Փաշաները ընդհատեցին իրենց խօսակցութիւնը: Այս երկուքն ալ ն… պէս ճաշի հրաւիրուած էին Էսատ պէյի տունը: Զորսը միասին ք… Սարէն ձորէն խօսելով յառաջացան: Ուզուն Սոքաք պողոտան հասեր… Անկից կը սկսի նեղ ճամբայ մը, որ կը տանի Տրապիզոնի Զէյթինլիք … ուած գրօսավայրը: Էսատ պէյի տունը կը գտնուէր այդ կողմը: Համտի … շա բռաւ իր չէրքէզ հետեւորդին, Ալի չավուշի.

— Ալի՛, տղա՛ս, գնա նայէ թէ Էսատ պէյ տուն դարձա՞ծ է:

Ալի չավուշ առաջ անցաւ: Զէյթինլիք բարձրացող նեղ ճամբայէն … կ'իջնէին երկու հոգի, հազիւ 25 տարեկան երիտասարդներ: Այս եր… սարդները, երբ 10 մեթր մօտեցան փաշաներուն, հանեցին իրենց … նակները եւ պարպեցին: Պահրի եւ Համտի փաշաները վիրաւոր … փուեցան: Յարձակում գործողները քովի փողոցը նետուեցան եւ … Ալի չավուշ, լսելով զէնքի ձայները, հասկցաւ պատահածը, եւ վազ… սկսաւ հետապնդել զանոնք: Այդ պահուն նոյն ճամբէն կ'անցնէր … զոնցի Պալըքօղլու Հաֆըզ, որ հետեւեցաւ Ալի չավուշի, միասին հե… դելու համար ոճրագործները:

Երկու փաշաներն ալ վիրաւորուած էին իրենց ոտքէն: Ծանր … վէրքերը: Միրզա Րազի խան եւ Իզզէթ պէյ փութով կառք բերին, … դրեցին վիրաւորները:

Ալի չավուշ եւ Պալըքօղլու Հաֆըզ երկար վազելէ յետոյ հասա… րագործներուն: Սակայն այս վերջինները, շարունակ զէնք արձակելով … տապնդողներուն վրայ, մտան այն փողոցը, ուր կը գտնուի անգլիակա… պատոսարանը: Այնտեղ կորսուեցան:

Խումբ մը ոստիկաններ, լսելով զէնքի ձայները, վազեցին հա… սկսան փնտռտուքի: Ի վերջոյ ձերբակալեցին երկու հոգի, իբրեւ կ… Անոնք կը կոչուէին Տրապիզոնցի Գասպարեան Արմենակ եւ Սեփ… Փօղոս: կատարուեցաւ հարցաքննութիւնը:

(Շար.)

